Nouakaran srpazan yérazheshdoutéan.
Sacred music book.
Constantinople, 1856.

# ՔԵՐԱԿԱՐԱՆ

## ՍՐԲԱԶԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ

ԿԱՄ

ՍԱՂՄՈՍՆԵՐՈՒ ԵՒ ՀՈԳԵՒՈՐ ԵՐԳԵՐՈՒ ԵՂԱՆԱԿՆԵՐ

ՀԱՆԳԵՐՁ ՆԵՐԱԾՈՒԹԵԱՄԲ

ՈՐ ԿԸ ՊԱՐՈՒՆԱԿԷ

ՁԱՅՆԱՒՈՐ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՌՕՏ ՏԱՐԵՐՔ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ Ա. Գ. ՉԸՐՉԻԼԻ

1856




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Աստուծոյ փառաբանութիւնները երգելու պարտաւորութիւնը շատ պարզ կերպով ցուցուած է Սուրբ Գրոց մէջ՝ թէ՛ օրինակներով ու թէ պատուէրներով. և միշտ ալ Աստուծոյ ժողովուրդին պաշտամունքին հաճելի մէկ մասը կազմած է։ Այս հիմակուան հրատարակուած գիրքը՝ նոյն պարտաւորութիւնը հաճելի՝ ընդունելի և շինու-թիւն տալու կերպով մը կատարելու մասին մեր Բրօթէսթանդ ժողովուրդներուն օգնելու համար է։

Երաժշտական կանոնները պարզ կերպով գրուած են, և կը յուսանք թէ մասնաւոր ջանք մը պիտի ըլլայ ամէն Բրօթէսթանդ ժողովներու մէջ երգելու արհեստը մշակելու. անանկ որ ամէնն ալ կարող ըլլան Աստուծոյ փառաբանութիւն մատուցանել "հոգիով ու մտաւորութեամբ"։

# ՏԱՐՐԵՐՔ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ

## ՄԱՍՆ Ա

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ

### ԳԼՈՒԽ Ա

### ՆԻՒԹԻՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲԱԺԱՆՈՒՄԸ

1. ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ կը բաղկանայ ականջի հաճոյական կերպով մը ձայներուն իրար յաջորդելէն՝ կամ մէկտեղ կապուելէն :

2. Երաժշտական ձայներուն հաճոյական յաջորդութիւնը՝ կը կոչուի Մեղեդի :

3. Իսկ հաճոյական կերպով անոնց մէկտեղ կապուիլը՝ կը կոչուի Ներդաշնակութիւն :

4. Երաժշտական ձայները կ'ըլլան,

1. Երկայն, կամ կարճ.
2. Բարձր, կամ ցած.
3. Ուժեղ, կամ անուշ.

5. Այս երեք բաժանումները կը կոչուին ձայնին

1. տեւողութիւնը.
2. աստիճանը.
3. զօրութիւնը :

### ԳԼՈՒԽ Բ

### ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՁԱՅՆԵՐՈՒՆ ՏԵՒՈՂՈՒԹԻՒՆԸ

#### Ա. ՉԱՓ

6. Ամէն եղանակ հաւասար մասերու կը բաժնուի, երգուելու համար քշած ժամանակին միջոցին նայելով :

7. Այս հաւասար մասերը՝ կը կոչուին Չափ :

8. Երաժշտական գրութեան մէջ՝ չափերը վերէն վար քաշուած գիծերով կ'որոշուին, որոնք կը կոչուին Գաւազան :

9. Երգելու ատեն՝ չափերը կ'որոշուին կանոնաւոր միջոցի մէջ եղած ձեռքի շարժումով :

10. Չափերը կը բաժնուին 2, 3, 4 կամ 6 հաւասար մասերու:

11. Երբոր չափերը երկու մասերու կը բաժնուին, ան ատենը ձեռքը փոփոխակի վեր վար կը շարժի. եթէ բաժնուին իրեքի, ձեռքը առաջ կը զարնէ, վերջը դրեթէ հորիզոնական ուղղութեամբ դէպ'ի ձախ կողմը կը շարժի ու դարձեալ վեր կ'ելլէ, ուրկէ կրկին կ'իջնէ կը զարնէ յաջորդ չափին սկիզբը, և այսպէս կը շարունակէ. և երբ որ կը բաժնուի չորս մասերու, շարժումները պիտի ըլլան այսպէս՝ վար, ձախ կողմը, աջ կողմը, և վեր. և երբոր կը բաժնուի վեց մասերու, կ'ըլլայ այսպէս՝ վար, կրկին վար, ձախ կողմը, աջ կողմը, վեր, և կրկին վեր:

12. Ձեռքին շարժումովը չափերուն և անոնց բաժանումներուն որոշուիլը կը կոչուի՝ Բախում. որուն ճշդութիւնը շատ հարկաւոր է Երաժշտական միօրինակութեան համար:

---

## Բ. ԽԱԶ

13. Ձայնը խազի պէս գիրի առնելու համար գործածուած նշանը՝ կը կոչուի Խազ (նօթա):

14. Ամէն մէկ խազին ձայնը որչափ տևելը՝ իր ձևէն կ'իմացուի:

15. Սովորաբար 6 ձև խազ կը գործածուի.

| | | | |
|---|---|---|---|
| Ամբողջ, | 𝅝 | | |
| Կէս, | 𝅗𝅥 | կամ այսպէս | 𝅗𝅥 |
| Քառորդ, | ♩ | " " | ♩ |
| Ութերորդ, | ♪ | " " | ♪ |
| Տասնըվեցերորդ, | 𝅘𝅥𝅯 | " " | 𝅘𝅥𝅯 |
| Երեսուն-ու-երկու-երորդ. | 𝅘𝅥𝅰 | " " | 𝅘𝅥𝅰 |

16. Երբոր կէտ մը (.) դրուի խազի մը առջև՝ կը ցուցունէ թէ անոր տևողութիւնը իր կէսին չափ կ'աւելնայ. ինչպէս՝ ամբողջ մը կէտով (𝅝.), հաւասար է ամբողջ ու կէս՝ (𝅝 𝅗𝅥) կամ 3 կէս ամբողջ խազերու (𝅗𝅥 𝅗𝅥 𝅗𝅥), և այլն:

---

## Գ. ՉԱՓԵՐՈՒՆ ԶԱՆԱԶԱՆՈՒԹԻՒՆԸ

17. Ըստ այլ և այլ ձևով խազերը՝ չափերուն զանազանութիւն կրնան պատճառել. և ամէն Երաժշտական գրութեան սկիզբը՝ միշտ թուանշանով կը ցուցուի ամէն մէկ չափին մէջ պարունակուած խազերուն ձևը:

18. Սովորաբար գործածուած չափերուն թուանշանները հետևեալներն են, և կը ցուցընեն ամէն մէկ չա-

փին մէջ պարունակուած խաղերուն ձեւը.

| | | | |
|---|---|---|---|
| 2/2 | կը ցուցունէ թէ չափերը կը պարունակեն 2 կէս ամբողջ, կամ | , և կ'ըսուի | Երկչափ |
| 3/2 | 3 " " , " | " " | Եռաչափ |
| 4/2 | 4 " " , " | " " | Քառաչափ |
| 2/4 | 2 քառորդ, կամ | " " | Երկչափ |
| 3/4 | 3 " , " | " " | Եռաչափ |
| 4/4 | 4 " , " | " " | Քառաչափ |
| 6/4 | 6 " , " | " " | Վեցչափ |
| 3/8 | 3 ութերորդ, կամ | " " | Եռաչափ |
| 4/8 | 4 " , " | " " | Քառաչափ |
| 6/8 | 6 " , " | " " | Վեցչափ |

19. Հարկ չէ որ ամէն չափ մի և նոյն ձև խաղ ունենայ, այլ կրնայ անոնց հաւասար արժէքը ունեցող ուրիշ խաղեր գործածուիլ ամէն մէկ չափին մէջ. ինչպէս՝

2/2 | | կամ | | կամ | | կամ | | կամ | | կրնայ գործածուիլ:

20. Մի և նոյն չափին մէջ ալ կրնայ այլ և այլ ձև խաղեր նաև գործածուիլ, միայն թէ ամէն չափին արժէքը իրարու հաւասար ըլլալու է՝ թուանշանին ցուցուցածին պէս. ինչպէս՝

2/4 | | կամ | | կամ | | | կամ | | կամ | | կամ | |

## Դ. ՁԱՅՆԱՀԱՏ

21. Երգի մէջ երբեմն պէտք եղած ատենը ձայնը կըտրել ու լուռ կենալու ժամանակին երկայնութիւնն ալ ցուցունելու նշաններ կան, որոնք իրենց տարբեր ձեւերովը լուռ կենալու այլ և այլ ժամանակներ կը ցուցունեն՝ խաղերուն երկարութեանը համեմատ, ու աս նշանները կը կոչուին Ձայնահատ։

22. Վեց ձեւ ձայնահատ կայ սովորաբար գործածուած, որ ասոնք են.

| | | | | |
|---|---|---|---|---|
| — | ամբողջ ձայնահատ. | որուն տեւողութիւնը հաւասար է, | մէկ ամբողջ խաղի։ | |
| — | կէս | " | կէս ամբողջ | " |
| | քառորդ | " | քառորդ | " |
| | ութերորդ | " | ութերորդ | " |
| | 16երորդ | " | 16երորդ | " |
| | 32երորդ | " | 32երորդ | " |

## ԳԼՈՒԽ Գ

## ՁԱՅՆԵՐՈՒՆ ԱՍՏԻՃԱՆԸ

### Ա. ՈՒԹՆԵԱԿ

23. Ութ ձայնը մարդ իր կոկորդէն կը հանէ. և բարձրը բերնին աւելի առջեւի մասէն կ'ելլէ։

24. Ձայն հանած կամ լսած ատեննիս՝ կ'զգանք որ ատոնցմէ ոմանք ճիշդ նման են իրարու, միայն թէ իրարմէ բարձր կամ ցած են. ասոնցմէ իրարու ամենէն մօտ եղած երկու ձայներուն մէջտեղի բոլոր միջոցը կը կոչուի Ութնեակ, որովհետեւ ութը ձայներու կը բաժնուի՝ որուն ամենէն ցածը կը կոչուի առաջին, և բարձրը ութերորդ։

25. Այս ութը ձայները՝ որ ամէնը մէկանց Սքալա կամ Սանդուխ կը կոչուին, որոշ ու հաստատուն հեռաւորութիւններ կամ միջոցներ ունին, որոնք կը կոչուին՝ առաջին, երկրորդ, երրորդ, չորրորդ, հինգերորդ, վեցերորդ, եօթներորդ, ութերորդ. և միշտ այսպէս կը համրուին ցածէն մինչև բարձրը։

26. Այս ձայները հետեւեալ անուններովն ալ կը կոչուին.

առաջինը, տօ.
երկրորդը, րէյ.
երրորդը, մի.
չորրորդը, ֆա.
հինգերորդը, սօլ.
վեցերորդը, լա.
եօթներորդը, սի.
ութերորդը, տօ.

Սքալան թուանշաններով ու անուններով կը գրենք հոս:



1 2 3 4 5 6 7 8 7 6 5 4 3 2 1
տօ րէյ մի ֆա սօլ լա սի տօ սի լա սօլ ֆա մի րէյ տօ

Ութերորդը առաջինէն թէպէտ բարձր՝ բայց միանգամայն անոր նման ձայն մը ունենալով, նոյն անունը՝ կ'առնէ. և ութերորդէն մէկ աստիճան վեր ելած ձայնը՝ պիտի կոչուի րէյ, որովհետև ճիշդ երկրորդին նման է, բայց ութնեակ մը բարձր. և ամէն ուրիշ ձայներն ալ ասոր պէս են:

27. Վանորայ ձայներուն վեր ելլելու կանոնաւոր կարգը կ'ըլլայ՝ Տօ, րէյ, մի, ֆա, սօլ, լա, սի, տօ: Եւ իջնելու կարգը, Տօ, սի, լա, սօլ, ֆա, մի, րէյ, տօ:

28. Սքալային խազերուն ձայներուն միջատեղի հեռաւորութիւնը կը կոչուի Միջոց, կամ Աստիճան:

29. Ութնեակին ութը ձայներուն մէջ, ամէն միջոց հաւասար չէ, այլ անոնցմէ հինգը մեծ են՝ և երկուքը անոնց կէսին չափ են. որ ատոնք կրնանք ամբողջ աստիճան, ու կէս աստիճան կոչել:

30. Կէս աստիճանները 3ին և 4ին, ու 7ին և 8ին միջատեղերն են. միւս ամէն միջոցները ամբողջ աստիճաններ են:

## Բ. ՏՈՂԱՇԱՐ ԵՒ ԿԼԵՖ

31. Ութնեակին այլ և այլ ձայները գիրով ցուցունելու համար՝ 15րդ հատուածին մէջ գրուած խազի նշանները կը գրուին կարգաւ քաշուած հինգ գիծերու վրայ, որ կը կոչուին Տողաշար, և այսպէս է:

32. Սօ խազի նշանները՝ գիծերուն վրայ և անոնց միջատեղերն ալ կարգաւ կը գրուին, ցած ձայները վար՝ և բարձրերը վեր գրուելով. վանորայ գիծերը և անոնց միջոցները կը համրուին վարէն վեր՝ այսպէս,

| | | |
|---|---|---|
| վերի յաւելուած գիծ | | |
| հինգերորդ " | | վերի միջոց |
| չորրորդ " | | չորրորդ " |
| երրորդ " | | երրորդ " |
| երկրորդ " | | երկրորդ " |
| առաջին " | | առաջին " |
| վարի յաւելուած " | | վարի " |

Տողաշարին վրայ գիծեր կրնայ աւելնալ թէ վերը և թէ վարը:

33. Տողաշարին աստիճաններուն անունները՝ այբուբենին առաջին եօթը գիրերով կը կոչուին: Սովորական

կերպը երկուք է. Մէկ կերպը՝ յաւելուած վարի գիծին վրայ Գ կը գրուի, և միւս կերպը երկրորդ միջոցին վրայ գրուի:

34. Երաժշտական գրութեանց մէջ աս երկու կերպին որը գործածուած ըլլալը որոշելու համար երկու նշան կը գործածուի եղանակին սկիզբը, որոնց Քլէֆ կ'ըսուի:

35. Աս նշանը 𝄞 Ս. քլէֆ կ'ըսուի, ու կը ցուցընէ թէ երկրորդ գիծին վրայ Ս. պիտի ըլլայ, ու անատենը վարի յաւելուած գիծին վրայ Գ կ'ըլլայ:

36. Աս նշանը Ֆ. քլէֆ կ'ըսուի, ու կը ցուցունէ թէ ասալ նոյն կերպով չորրորդ գիծին վրայ Ֆ. պիտի գրուի, ու անատենը երկրորդ միջոցին վրայ Գ կ'ըլլայ:

Օրինակներ



է ա բ գ դ ե զ է զ ե դ գ բ
սօլ լա սի տօ րէյ մի ֆա սօլ ֆա մի րէյ տօ սի



զ է ա բ գ դ զ ե դ գ բ ա է
ֆա սօլ լա սի տօ րէյ ֆա մի րէյ տօ սի լա սօլ

Աստի Ս. քլէֆին վրայ ութնեակին կանոնաւոր կարգը դէպ'ի վեր՝ կ'ըլլայ այսպէս:



գ դ ե զ է ա բ գ
տօ րէյ մի ֆա սօլ լա սի տօ

Եւ նորէն դէպ'ի վար կարգը, կ'ըլլայ այսպէս:



գ բ ա է զ ե դ գ
տօ սի լա սօլ ֆա մի րէյ տօ

Այսպէս Ֆ. քլէֆին վրայ ութնեակին կարգը դէպ'ի վեր՝ կ'ըլլայ այսպէս:



գ դ ե զ է ա բ գ
տօ րէյ մի ֆա սօլ լա սի տօ

Ու դէպ 'ի վար կ'ըլլայ այսպէս ։




Կախընթաց դասերուն վրայ վարժութիւններ ։



Ասոր գործնական վարժութիւնը կ'ըլլայ խազերուն անուանները տալով երգել՝ և բախումները ընել 13րդ հատուածին համեմատ ։



Նմանապէս հետևեալն ալ առաջ խազերուն անուանները երգել՝ վերջը անոնց տեղը բառերովը երգել ։









Հետևեալները յարմար օրինակներ են ձայնահատները սորվելու ։











37. Երբ և նոյն ձայնը ցուցանող երկու խազ՝ երբոր կապով մը միացած են, մէկ ձայն մը կը հանեն ։

Վարժութիւն ։

---

## Գ. ՎԵՐՆԱԽԱՂ, ՆԵՐՔՆԱԽԱՂ։

38. Սանդղային ան աստիճանները որ ամբողջ են, կրնան միջանկեալ ձայն մըն ալ ունենալ. զոր օրինակ՝ 1 և 2, 2 և 3, 4 և 5, 5 և 6, ու 6 և 7. բայց 3 և 4, 7 և 8, ըստ որում կէս աստիճան են, (տես 29, 30,) չեն կրնար միջանկեալ ձայն մը ունենալ ։

39. Կէս աստիճան ունեցող նօթաները սանդղաշարին վրայ գրուելու տեղը, կրնան կամ վարի կամ վերի աստիճանին վրայ գրուիլ. զոր օրինակ՝ 1 և 2ին միջավայրը գրուելու կէս աստիճան ունեցող նօթան, կրնայ 1ին վրայ ալ գրուիլ, 2ին վրայ ալ ։

40. Կէս աստիճան ունեցող նօթան՝ երբոր սանդղաշարին վարի աստիճանին վրայ գրուի, բարձրացընելու նշան մը կը գրուի անոր առջևը, որ Վերնախաղ (#) կ'ըսուի. և ձայնը կէս աստիճան վեր կը բարձրացընէ, և ան անունը նոյն թիւը կամ գիրը կ'ըսուի Վերամբարձ ։

41. Նմանապէս երբոր վերի աստիճանին վրայ գրուի, ցածցընելու նշան մը կը գրուի անոր առջևը, որ Ներքնախաղ (♭) կ'ըսուի. և ձայնը կէս աստիճան վար կ'իջեցընէ, և ան անունը նոյն թիւը կամ գիրը կ'ըսուի Վայրաբեր ։

42. Այս կէս աստիճան նօթաներուն անունները զարծանած անուններու քիչ մը փոփոխութիւն կ'ըլլայ. զոր օրինակ՝ տօ, տի. րէյ, րի. ֆա, ֆի. սօլ, սի. ևն, կ'ըլլայ վերնախաղ ունեցած անունը. անանկ ալ ներքնախաղ ունեցած անունը կ'ըլլայ տօ, տէյ. ֆա, ֆէյ. ևն ։

43. Տասներկու նօթա ունեցող սանդղա մը՝ տասներկու կէս աստիճանաւոր միջոցով Կիսաձայն սանդղա կ'ըսուի ։

Հետևեալ տախտակը կը ցուցընէ կիսաձայն սանդղան թիւերով, գիրերով, ևն ։

| | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | #1 | 2 | #2 | 3 | 4 | #4 | 5 | #5 | 6 | #6 | 7 | 8 |
| Պ | Պ# | Պ | Պ# | Ն | Օ | Օ# | Է | Է# | Ը | Ը# | Բ | Պ |
| տօ | տի | րէյ | րի | մի | ֆա | ֆի | սօլ | սի | լա | լի | սի | տօ |

| | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 8 | 7 | ♭7 | 6 | ♭6 | 5 | ♭5 | 4 | 3 | ♭3 | 2 | ♭2 | 1 |
| Գ | Բ | Բ♭ | Ա | Ա♭ | Է | Է♭ | Զ | Ե | Ե♭ | Դ | Դ♭ | գ |
| տօ | սի | սէյ | լա | լէյ | սօլ | սէյ | ֆա | մի | մէյ | րէյ | րէյ | տօ |

44. Նշանակի մը մէջ վերնախաղ կամ ներքնախաղ մը որ նօթային վրայ դրուած ըլլայ՝ միայն նոյն տեսակ նօթային կ'ազդէ, ու ան ալ իր գտնուած չափին մէջ։

Օրինակ

Այս վերնախաղը կ'ազդէ առջի չափին մէջ գտնուած երկու Դ'ին վրայ, բայց երկրորդ չափին մէջի Դ'ին չազդեր։

45. Թէ որ առջի չափին մէջի վերնախաղ կամ ներքնախաղ ունեցող նօթային տեսակէն ըլլայ հետեւեալ չափին մէջի առաջին նօթան՝ անոր ազդեցութիւնն ինքն ալ կ'ընդունի, ու մինչեւ չափին վերջը կը շարունակուի։

Օրինակ

46. Վերնախաղին կամ ներքնախաղին ուժը կոտրելու համար մէկ նշան մը կը գործածուի, որ Բնական (♮) կ'ըսուի։

Օրինակ

Վարժութիւն։

## Դ. ՍՔԱԼԱՅԻՆ ՏԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ

47. Մինչև հիմա երկու քլէֆներուն վրայ ալ տօյին տեղը հաստատուն սեպեցինք. բայց շատ անգամ տօն ուրիշ տեղեր դնել յարմար կ'ըլլայ ։ Բայց որովհետև Ե ին և Զ ին, ու Բ ին և Գ ին միջոցները միշտ կէս կէս աստիճան պիտի ըլլան, և միւսները ամբողջ, վասն որոյ տօն իր տեղէն շարժած ատենը՝ տողաշարին սկիզբը վերնախաղ կամ ներքնախաղ կը դրուի, որ աստիճանները շիտակ գան. ինչպէս՝ թէ որ սքալան հետևեալ կերպովը գրենք,

է ա բ գ դ ե զ է

տօ րէյ մի ֆա սօլ լա սի տօ

և բաղդատենք անիկայ 36րդ հատուածին հետ՝ յայտնի պիտի ըլլայ որ աստ մէջ Ե ին և Զ ին մէջտեղը կէս աստիճան կայ, ու Զ ին և Է ին մէջտեղը ամբողջ, որ առջի աստիճանը ամբողջ ըլլալու էր ու երկրորդը կէս աստիճան ։ Ուստի Զ ին վրայ վերնախաղ դնելով կէս աստիճան վեր կ'առնուի, և միջոցները շիտակ կ'ըլլան ։

48. Վասն որոյ երբոր տողաշարին սկիզբը Զ ին վրայ վերնախաղ մը կը դնենք, կ'իմանանք որ տօն երկրորդ գիծին վրայ է ։

49. Հետևեալին վրայ կը տեսնուի թէ տօն ուր պիտի ըլլայ՝ մէկ, երկու, իրեք, և այլն վերնախաղ եղած ատենը ։

Տօ Տօ Տօ Տօ Տօ Տօ

Հոս կը տեսնուի որ տողաշարին վրայ ամէն յաջորդ անգամ դրուած վերնախաղը՝ առաջինէն վեր հինգերորդ աստիճանին վրայ կը դրուի, և տօն կու գայ միշտ ան վերջին վերնախաղէն մէկ աստիճան վեր ։

50. Հետևեալն ալ կը ցուցունէ սկիզբը ներքնախաղ ունեցող տողաշարներուն վրայ տօն ուր կենալը ։

Տօ Տօ Տօ Տօ Տօ Տօ

Մէկ վերնախաղ ու մէկ ներքնախաղ ունեցող սքալան նոյն է․ որովհետեւ մէկին տօն կու գայ վերի [illegible]ին վրայ, եւ միւսինը վարի [illegible]ին վրայ, որոնց երկուքին ձայնն ալ նոյն է։

Կը տեսնուի նաեւ որ ամէն յաջորդ ներքնախաղ՝ տողաշարին վրայ առջինէն չորս աստիճան վեր կը դրուի, եւ տօն միշտ վերջին ներքնախաղէն հինգ աստիճան վեր կու գայ։

---

## Ե․ ՄԻՆՈՐ ՍՔԱԼԱՆ

51․ Ուրիշ տեսակ սքալա մըն ալ կայ 31ւդ հատուածին մէջ ցուցուած սքալայէն զատ, որ կը կոչուի Մինօր եւ Մաժօր․ որոնց տարբերութիւնը ձայներուն մէջտեղը եղած աստիճաններուն վրայ է։

52․ Մինօր սքալային մէջ վարէն վեր ելլելու ատեն՝ կէս աստիճանները րէյին եւ միին, ու սիին եւ տօին մէջտեղերը կու գան․ եւ վերէն վար իջնելու ատեն՝ լային ու սոլին, եւ միին ու րէյին մէջտեղերը կու գան։

53․ Հետեւեալները կը ցուցունեն մաժօր ու մինօր սքալաներուն տարբերութիւնը։

Մաժօր սքալա առանց վերնախաղի եւ ներքնախաղի։




Մինօր սքալային վարէն վեր ընթացքը, տօն վերինին պէս նոյն տեղէն դնելով։




Ու իջնելու ընթացքը։




54․ Սովորութիւն է որ մինօր սքալային վրայ վերէն վար իջնելու ատեն պէտք եղած նշանները տողաշարին սկիզբը կը դրուի, եւ վեր ելլելու ատեն պէտք եղածները չափերուն մէջ նոյն ան պէտք եղած խազերուն քովը կը դրուի։ Ու այսպէս կը գրուի



տօ սի լա սօլ ֆա մի րէյ տօ

55 . Դիտելու է որ սա մինոր սքալան նոյն ներքնախաղները ունի՝ ինչ որ մաժոր սքալան ունի, որուն տօն տաղաչափին առաջին գիծին վրայ է. որ ան տօն մէկ ու կէս աստիճան վեր է: Ասան որոյ մէկ տողաչափի մը վրայ քանի ներքնախաղ կամ վերնախաղ որ ըլլայ, անոր մինորը կը գտնուի տօն աստիճան ու կէս վար գնելով:

56 . Հետեւեալները 47րդ և 48րդ հատուածներուն մէջ եղած տողաչափներն են՝ իրենց մինորի փոխուած ձեւը քովերնին ունենալով:

մաժ. մին. մաժ. մին. մաժ. մին. մաժ. մին.

տօ տօ տօ տօ տօ տօ տօ տօ

մաժ. մին. մաժ. մին. մաժ. մին.

տօ տօ տօ տօ տօ տօ

մաժ. մին. մաժ. մին. մաժ. մին.

տօ տօ տօ տօ տօ տօ

մաժ. մին. մաժ. մին. մաժ. մին.

տօ տօ տօ տօ տօ տօ

Դիտէ որ ինչպէս որ վեց վերնախաղ ու վեց ներքնախաղ ունեցող մաժոր տողաչափները նոյն են, անանկ ալ անոնց մինորները նոյն են:

57 . Ուրիշ կերպ մըն ալ կայ մինոր սքալային վրայ, որ հոս գրած ենք. և սորվողին ու սորվեցընողին կամքին կը ձգենք սա կամ միւս կերպը ընտրելը:

Ծ . Մինոր սքալան իր բնական գիրքին մէջ, սա կերպին նայելով Լաւ կ'ըսուի, որ առաջինին տեղ կը սկսուի:

Ա. մինօրին օրինակ



| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 |
|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ա |
| լա | սի | տօ | րէյ | մի | ֆի | սի | լա |



| 8 | 7 | 6 | 5 | 4 | 3 | 2 | 1 |
|---|---|---|---|---|---|---|---|
| ա | է | զ | ե | դ | գ | բ | ա |
| լա | սօլ | ֆա | մի | րէյ | տօ | սի | լա |

բ. Վարէն վեր ելլելու ատեն 6ը և 7ը վերնախաղ կ'ունենայ, բայց վերէն վար իջնելու ատենք իրենց բնական ձայները կը պահեն :

գ. Երբոր մաժօր ու մինօր սքալաները նոյնչափ թիւով վերնախաղ կամ ներքնախաղ ունենան տողաշարին սկիզբը, անոնք իրարու առնչական սքալաներ կ'ըսուին. ինչպէս՝ Դօ էն սկսած մաժօր սքալան, Լա էն սկսած մինօրին առնչական կ'ըսուի. և նմանապէս Լա էն սկսած մինօրը՝ Դօ էն սկսած մաժօրին առնչական կ'ըսուի :

դ. Որ և իցէ մաժօրի առնչական եղող մինօրը իրեք աստիճան վար է. և որ և իցէ մինօրին առնչական մաժօրը իրեք աստիճան վեր է :

ե. Թէ՛ գիրերը ու թէ նօթաներուն անունները նոյն են առնչական մինօրին ու մաժօրին մէջ. ինչպէս տօն՝ Դ ին վրայ կ'ըլլայ երկուքին մէջն ալ, թէև մաժօրին մէջ առաջին է և մինօրին մէջ երրորդն է :

---

## Զ. ՓՈԽԱՆՑՈՒՄ ՍՔԱԼԱՅԻ

58. Երբեմն եղանակի մը մէջ տօին տեղը մէկ տեղէ մը ուրիշ տեղ մը կը փոխադրուի, անիկայ սքալայի փոխանցում կ'ըսուի : Մէկ եղանակ մը շիտակ երգելու համար հարկաւոր է աս փոփոխութիւնը զգալ. վասն զի թէև սքալային աստիճանները ամբողջ աստիճան ու կէս աստիճան կ'ըսուին, բայց և այնպէս կէս աստիճան բաժնիս՝ մէկ աստիճանին ճիշդ կէսին չափ չէ. ոչ ալ ամբողջ բաժանները ճիշդ հաւասար են իրարու. վասն որոյ անոնց ձայնը ականջը պիտի որոշէ :

59. Վարժութեան մէջ՝ խազերուն անունները տալու ատեն, եղանակը ուրիշ սքալայի մէջ մտածելու պէս անունները փոխուելու են :

60. Հետևեալները սքալայի փոխանցումներու օրինակներ են :

Բնականէն՝ մէկ վերնախաղով տողաշարին վրայ եղած փոխանցումը ։



սոլ տօ սի լա սոլ տօ րէյ տօ սի տօ

Մէկ վերնախաղովէն բնական տողաշարին փոխանցումը ։



տօ սի տօ րէյ մի րէյ տօ լա սոլ ֆա մի րէյ տօ

Բնականէն մէկ ներքնախաղով տողաշարի ։



տօ սի տօ սոլ լա սի տօ սոլ մի ֆա րէյ տօ րէյ տօ

---

## Է. ԶԱՆԱԶԱՆ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ

61. Քանի մը երաժշտական նշաններ ալ գլխաւորապէս տօ գլխուն վերաբերութիւն ունենալով հոս պիտի բացատրուին ։

Մանր խաղերը կրնան զանց ըլլալ զարդարանքէն 'ի զատ բան մը չսեպուելով, բայց կատարեալ երգելու համար անոնց արժէքը հետեւեալ կերպովը կ'ըլլայ ։



Երգուելու է հետեւեալ կերպով ։



62. Բայց երբոր մանր խաղերը միւսներէն վերջը կը դրուին, ուրիշ կերպով պիտի երգուին, ինչպէս ։

կը գրուի այսպէս



կ'երգուի այսպէս



63. Այս ⁀ նշանը որ կոր կ'ըսուի, քանի մը խազերու վրայ գրուած՝ կը ցուցունէ թէ մէկըմէկէ սահելով մը երգելու է, և մէկ վանկով։





64. Այս (ˈ) նշանը որ չէշդ կ'ըսուի, խազի մը վրայ գրուելով՝ կը ցուցունէ թէ անիկայ ուժով ու կարուկ կերպով մը երգուելու է. զոր օրինակ




65. Այս 𝄐 նշանը որ երկարում կ'ըսուի, կը ցուցունէ թէ որուն վրայ որ գրուեր է, այն խազին ձայնը իր սովորական ժամանակէն աւելի երկընցունելու է։

66. Հատոր գաւազանը ‖ կամ եղանակի մը վերջը կը ցուցունէ, կամ ‖ տանաւորին տողին վերջը։

67. Այս } նշանը որ փականիշ կ'ըսուի, քանի մը տողաշար մէկ տեղ կը կապէ, և կը ցուցունէ թէ անոնք մէկ տեղ երգուելու են զանազան ձայնով։

---

## ԳԼՈՒԽ Գ

### ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՁԱՅՆԵՐՈՒՆ ԶՕՐՈՒԹԻՒՆԸ

68. Որովհետև այլ և այլ զգացողութիւններ կրնայ յայտնուիլ ձայն մը հանելու կերպէն, վասն որոյ շատ հարկաւոր է միտ դնել այն նշաններուն՝ որ տողաշարին վրայ կը դրուին այն զանազանութիւնները ցուցունելու համար։

69. Միջակ. կը ցուցունէ թէ ձայները սովորական զօրութեամբը երգելու է, որուն համառօտութիւնն է մֆ։

70. Մեղմ. սովորականէն մեղմ ձայնով մը երգելու է, և անոր համառօտութիւնն է փ։

71. Ամուր. սովորականէն ամուր ձայնով երգելու է. և համառօտութիւնն է ֆ։

72. Շատ մեղմ. համառօտութիւնը. շ. փ։

73. Շատ ամուր. համառօտութիւնը շ. ֆ։

74 . Այս <————— ձևը կը ցուցընէ թէ մեղմ ձայնէն սկը-սելու է, և քիչ քիչ ամուրցունելու է ։

75 . Նյւ աս —————> կը ցուցունէ որ ձայնը քիչ քիչ մեղմի իջեցունելու է ։

76 . Այս <————— —————> ալ կը ցուցունէ թէ մեղմ ձայնէն սկսելով կամաց կամաց ամուրցունելու է, և նո-րէն քիչ քիչ մեղմի իջնելու է ։

---

# ԳԼՈՒԽ Ե

## ՆԵՐԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ

### ՆԵՐԴԱՇՆԱԿ ՁԱՅՆԵՐ

77 . Երբոր երկու կամ աւելի ձայներ մէկտեղ հնչուած ատենը լսողութեան հաճելի տպաւորութիւն մը կ'ընեն, ան ձայները Ներդաշնակ կ'ըսուին ։

78 . Երաժշտութիւնին մարդուս զգացումները կամ մտքին վիճակը ցուցունելու զօրութիւնը՝ մեծապէս կ'աճի ձայներուն ներդաշնակ շարակարգութեամբը ։ Այս ալ դիտելու է որ իւրական ձայնը արտականէն շատ բարձր է, և ամէն մէկը անանկ ձայներ կրնայ հանել որ միւսը չկրնար ։ Աստն որոյ շատ հարկաւոր է որոշել թէ՝ ինչ ձայներ ներդաշնակ են մէկզմէկու, և մէկ տեղ կապուելով կրնան անանկ հաճելի ըլլալ ։

79 . Ամէն տեսակ տողաշարի վրայ հետևեալ ձայները միշտ ներդաշնակ են, թէ անոնցմէ որ և իցէ երկուքը կամ երեքը միայն հնչուի ու թէ ամէնը մէկէն ։

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1րդ | | դօ | 2րդ | | ռէյ | 2րդ | | ռէյ |
| 3րդ | կամ | մի | 4րդ | կամ | ֆա | 4րդ | կամ | ֆա |
| 5րդ | | սօլ | 5րդ | | սօլ | 6րդ | | լա |
| 8րդ | | դօ | 7րդ | | սի | 9րդ | | ռէյ |

որոնք այսպէս կը գրուին ։



Այս ձայները ներդաշնակ կուգան նաև բարձր և ցած աքալաններուն նոյն և նման խազերուն հետ ։

80. Հետեւեալ աղիւսակը կը ցուցունէ ամէն մաժօր սքալաներուն ներդաշնակ ձայները :



81. Հետեւեալ աղիւսակն ալ ամէն մինօր սքալաներուն ներդաշնակ ձայները կը ցուցունէ :



Ներդաշնակ ձայներու վրայ վարժութիւններ :



### Բ. ՍՔԱԼԱՅԻՆ ԸՆԴԱՐՁԱԿՈՒԹԻՒՆԸ
### ԵՒ
### ՄԷԿՏԵՂ ԵՐԳՈՒԵԼՈՒ ՄԱՍԵՐՈՒՆ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆԸ

82. Վերի տօէն վեր եղած ձայները՝ ուրիշ բարձրագոյն սքալայի մը ձայները սեպուելու են. և վարի տօէն վար եղածները՝ վարի սքալայի մը:

83. Մարդկային ձայնը բնականապէս չորս կարգերու կը բաժնուին: 1. Ցած արական ձայները՝ որ Պասօ կը կոչուին: 2. Բարձր արական ձայները՝ որ Թէնօր կը կոչուին: 3. Ցած իգական ձայները, Ալթօ կոչուած: 4. Բարձր իգական ձայները՝ Սօփրանօ կամ Թրէպըլ: Տղաքը՝ ձայներնին չփոխուած ալթօ կրնան երգել:

84. Հետևեալ աղիւսակը կը ցուցունէ մարդկային ձայնին սովորական սահմանը, և միանգամայն վերոյիշեալ չորս կարգերուն ամէն մէկուն երգելու մասերը:




85. Իգական ձայնը արականէն ամբողջ ութնեակ մը բարձր է. և թէպէտ Թէնօրը Ն: բանալիի վրայ կը գրուի, բայց իգական ձայնի մը երգելիքէն ութը աստիճան վար երգուելու համար է: Վասն որոյ կին մը՝ կամ աղջիկ մը բնաւ Թէնօր երգելու չէ, եթէ ոչ գրուածէն ութնեակ մը վար ձայնով: Նմանապէս արու անձինք ընդհանրապէս չեն կրնար երգել սօփրանօ կամ ալթօ, որովհետև արուի ձայնով երգուելիքէն ութնեակ մը վեր երգուելու համար գրուած են:

86. Հետևեալ աղիւսակը կը ցուցունէ չորս մասերուն սովորաբար երգուած կարգը:

Սօփրանօ կամ Թրէպըլ. իգական բարձր ձայնը:



Ալթօ. իգական ցած ձայնը:



Դիտէ որ աս երկու մասերը ամբողջ ութնեակ մը ունին որ իրարու հետ նոյն են. այսինքն վարի Դ էն վերի Դ ը. բայց սօփրանօն Դ էն վեր մինչև Ն: կ'երթայ, և ալթօն մինչև վարի Ն:ն կ'իջնէ:

Թէնօր. արական բարձր ձայնը ։



Ըս մասին գրուածքը Սօփրանօյին հետ նոյն է, և ամբողջ ութնեակ մը ունի ալթօին հետ նոյն ։ Բայց որովհետև արական ձայնով պիտի երգուի, վասն որոյ ալ կարգէն միայն վերի հինգ ձայները՝ այսինքն Գ էն Ը նոյն են Սօփրանօին վարի հինգ ձայներուն հետ, այսինքն Գ էն Ը ։ Նաև իր վերի ութը ձայները՝ այսինքն Ը էն մինչև Ը ալթօին վարի ութը ձայներուն հետ նոյն է, այսինքն Ը էն Ը ։

Պասօ. արական ցած ձայնը ։



Ըս երկու մասերը որ արուի ձայնով կ՚երգուին, ամբողջ ութնեակ մը ունին իրարու հետ նոյն. այսինքն՝ Պասօին վերի ութը ձայները Գ էն մինչև Գ, Թէնօրին վարի ութը ձայներուն հետ ։

Պասօն մէկ ձայն մը ունի նոյն՝ Սօփրանօին հետ, այսինքն Պասօին վերի Գ ը Սօփրանօին վարի Գ ին հետ ։ Նաև չորս ձայն ունի ալթօին հետ նոյն. այսինքն վերի չորս ձայները Ը էն մինչև Գ՝ ալթօին վարի չորս ձայներուն հետ ։

Մէկտեղ երգուելու երկու մասի վարժութիւն ։

1



2



3



Շղթան քաշուած եղանակը որն որ մէկ հոգի մը կ՚սկսի երգել, և երբ ան պիտի սկսի միւս տողը՝ ան ատենը ուրիշ մըն ալ կ՚սկսի սկիզբէն և կը շարունակէ. անանկ որ մէկ հոգի մը եղանակին մէկ տողը կ՚երգէ, և նոյն ատենը ուրիշը ուրիշ տողը, որն որ անանկ շինուած է որ ներդաշնակ կու գայ միւս տողերուն հետ ։

Շրջան երկու հոգիի համար:

1



Մէկը առաջ կ'երգէ առջի երկու չափերը. երբ կը հասնի առաջին հաստ գաւազանին, երկրորդն ալ կ'սկսի սկիզբէն երգել: Երբոր առաջին երգողը վերջին խազը հասնի, երկրորդը այն տօնին վրայ պիտի ըլլայ՝ որուն վրայ երկարումի նշանը կայ, որն որ կը ցուցունէ թէ հոն կենալու է անոր վրայ:

Շրջան երկու հոգիի համար:

2





Շրջան չորս հոգիի համար:

3







Շրջան իրեք հոգիի համար:

4


















# ՄԱՍՆ Բ

## ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԻՒՆԸ

## ԳԼՈՒԽ Ա

### ՁԱՅՆԻՆ ԻՆՉ ԸԼԼԱԼԸ

87. *Ձայնը օդին ծօծումէն յառաջ կու գայ. որ նոյն օրինակ ծօծում մը կը պատճառէ ականջին թմբուկին վըրայ, որուն շարժումը հաղորդող ջիղերով ուղեղը կը հասնի։*

*Նախընթաց առաջարկութեանը վրայ փորձեր։*

(1) *Նիւթի մը ծօծումը յայտնի կ'իմացուի, ձայն հանած ատենը։ Լար մը՝ կամ մետաղի երկայն ու նեղ կտոր մը՝ յայտնի կերպով կը տեսնուի դողալը ձայն հանած ատենը։*

(2) *Այս ծօծումները դադրածին պէս՝ ձայնն ալ բոլորովին կը կտրի։*

*Վասն որոյ, որովհետեւ ձայն ընծայող նիւթը՝ ձայն հանած ատենը իր նիւթէն բնաւ մաս մը չտարածեր, ձայնը մեր ականջներուն պիտի հասնի՝ այն նիւթին շարժումը իր բոլորտիքը եղած օդին հաղորդուելով։*

(3) *Երբոր ջուրի մը մէջ զանգակ մը հնչուի, թէպէտ և*

գլուխը ջուրին մէջ եղող մէկը կրնայ լսել, բայց ո՛չ թէ օդին մէջ չալուածին պէս որոշակի. վասն զի ջուրը քիչ առաձգականութիւն ունի, և զանգակին ծօծումները աղէկ չկրնար հաղորդել:

(4) Եթէ զանգակ մը կախուի ապակի ամանի մը մէջ, չալուած ատենը որոշ կը լսուի ձայնը, բայց երբոր օդահան գործիքով ան ամանին մէջի օդը պարպուի, ձայնը գրեթէ չլսուիր:

88. Մէկ նիւթի մը այնպէս թռթռալու կամ ծօծելու ընդունակութիւնը որչափ որ շատ ըլլայ, իր շարժումը օդին ալ հաղորդելու՝ և անանկով ձայն յառաջ բերելու ընդունակութիւնն ալ շատ կ'ըլլայ:

89. Ձայնը մէկ մանրերկրորդի (սանիյէ) մէջ 500 կանգունի չափ տեղ կը տարածուի: Երբ որ հրացան մը կամ թնդանօթ մը կը նետուի, լոյսը անմիջապէս կը տեսնես, վասն զի լոյսը գրեթէ անչափելի արագութեամբ կ'երթայ. բայց ձայնը՝ քիչ մը ժամանակ անցնելէն վերջը ականջիդ կը հասնի: Այս հեռաւորութիւնը կրնայ ստուգուիլ լոյսին ու ձայնին մէջ անցած ժամանակը նայելով:

90. Ձայնին ուժը անկէ կախում ունի, որով ձայն հանող նիւթը օդին կը զարնէ, և ան ալ ականջին: Այս ուժը երբեմն այն աստիճանի կը հասնի, որ կը ճաթեցունէ ականջին թմբուկը և անմիջապէս խուլ կ'ըլլայ մարդը, և կրնայ պատուհանին ապակիները կոտրել:

91. Ձայնին բարձրութեան աստիճանը՝ օդին ըրած ծօծումներուն արագութենէն կախում ունի: Երբ որ ծօծումները ծանր են՝ ձայնը ցած կ'ըլլայ, և երբ որ արագ են՝ ձայնն ալ բարձր կ'ըլլայ: Նոյն աստիճան ձայնը՝ միշտ նոյն թիւով ծօծումով յառաջ կու գայ, ան ձայնը հանող նիւթը կամ գործիքը ինչ որ ըլլայ:

92. Գործիքներ շինուած են և փորձեր եղած են, որոնցմով համրեր և ստուգեր են՝ առանց տարակուսի շուք մը թողելու, ան ծօծումներուն թիւը որ յառաջ կը բերեն մարդկային ականջին զգացած ամէն ձայնը՝ ամենացածէն մինչև ամենաբարձր աստիճանը:

---

## ԳԼՈՒԽ Բ

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՁԱՅՆԻՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԻՒՆԸ

### Ա. ՆԵՐԴԱՇՆԱԿՈՒԹԵԱՆ ՕՐԷՆՔՆԵՐԸ

93. Երբ որ ջուրի մը մէջ քար մը ձգուի, ան ինկած տեղը կեդրոն մը ձևանալով՝ անոր բոլորտիքէն ալիքի շրջանակներ կը տարածուին:

Ձայն մը հնչուած ատենը՝ օդին ծօծումն ալ անանկ է: Հիմա՝ եթէ ուրիշ քար մըն ալ ձգուի նոյն տեղը, անանկ որ տարբեր ձևութեամբ ալիքներ յառաջ բերէ, սա երկու արդիւնքին մէկը պիտի հետևի: 1. Կրնայ ըլլալ որ նոր ալիքները առջիններուն ձևութեան կրկնապատիկը՝ եռա-

պատիկը կամ քառապատիկը ըլլան, և ան ատենը կը համաձայնին և մէկզմէկու օգնելով յառաջ կ'երթան՝ նոյն ատենը իրենց ձևը չկորսնցունելով: Կամ թէ՝ 2. առաջինը միւսին 1 և $\frac{3}{55}$, կամ 2 $\frac{9}{13}$ ևն, անգամը կ'ըլլայ. և ան ատենը բանը շփոթ կ'ըլլայ, և փոփոխակի մէկզմէկու ձև կ'աւրեն: Եթէ կարելի ըլլար երկու քարերը նոյն րոպէին և մի և նոյն տեղը ձգել, աւելի յայտնի կերպով պիտի ըլլար աս բանը:

94. Ուստի ան ձայները՝ որ ներդաշնակ կու գան մէկզմէկու, հարկաւ անոնք պիտի ըլլան՝ որոնց օդեղէն ալիքներուն մեծութիւնը մէկզմէկու կը յարմարի, և ալիքները մէկտեղ յառաջ կ'երթան. ուրիշ խօսքով՝ մէկ որոշ ժամանակի մը մէջ անոնց ըրած ճօճումներուն թիւերուն ամէն մէկը դիւրաւ կը բաժնուի մի և նոյն թիւով: Դիւրաւ կը տեսնուի որ ան ձայները՝ որ մէկ մանրերկրորդի մէջ հետևեալ թիւերով 100, 150, 200, ևն ճօճում կ'ընեն, հաճոյ պիտի գան լսողութեան. վասն զի ասոնց ճօճումները մէկ մանրերկրորդի մէջ 50 անգամ նոյն կու գան: Առաջինը՝ 2 ճօճում կ'ընէ՝ երբ երկրորդը կ'ընէ 3, և երրորդը 4: Նաև դիւրաւ կ'իմացուի որ մէկ մանրերկրորդի մէջ հետևեալ թիւերով 79, 117, 193, ևն ճօճում ունեցող ձայները՝ շատ անհաճոյ և նեղացուցիչ պիտի ըլլան լսողութեան, իրբոր անոնք նոյն ատենը ականջին հասնին. որովհետև անոնց ճօճումները մէկ մանրերկրորդի մէջ մէկ անգամ նոյն կու գան, ու իրեք ձայներուն ամէն մէկուն բոլոր միւս ճօճումները կը ներգործեն ականջին ինքնին և միւսներէն անկախաբար:



## Բ. ԵՒՐՈՊԱԿԱՆ Ս՚ՔԱԼԱ

95. Եւրոպական ազգերուն գործածած սքալան՝ նախընթաց հաստատ ապացուցուած սկզբունքներուն համաձայն է. և անոնցմով կը մեկնուի նոյն ազգաց մէջ ընդհանուր հաւանութեամբ ընդունուած հաճոյական ներդաշնակ շարակարգութիւններուն պատճառները:

96. Հետևեալը նոյն սքալային ամէն մէկ ձայներուն յառաջ բերած ճօճումներուն թիւին ցանկն է, տօն Ա: քլէֆին Ը ին վրայ սեպելով:

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| ա | տօ | 420 | ճօճում | ամէն | մէկ | մանրերկրորդ |
| բ | րէյ | 472 $\frac{1}{2}$ | " | " | " | " |
| գ# | մի | 525 | " | " | " | " |
| դ | ֆա | 560 | " | " | " | " |
| ե | սօլ | 630 | " | " | " | " |
| զ# | լա | 700 | " | " | " | " |
| է# | սի | 787 $\frac{1}{2}$ | " | " | " | " |
| ա | տօ | 840 | " | " | " | " |

Մէկ ձայն մը ուրիշէ մը ութնեակ մը բարձր կ'ըլլայ՝ անոր ճօճումներուն ճիշդ երկու անգամը ունենալով. ասիկայ ամենակատարեալ ներդաշնակ ձայնն է, որ երկու ճօճում կ'ընէ միւսին ամէն մէկ ճօճում ընելուն:

97. Վերի աղիւսակը աւելի կրնայ պարզուիլ՝ թիւերը

պղպրկցունելով, միանգամայն մէկզմէկու ունեցած համեմատութիւննին պահելով: Այսպէս.

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| տօ — | 420 | ճօճումները եթէ սեպենք | 1 | | 1 | կամ | $\frac{24}{24}$ |
| րէյ — | 472 ½ | ան տանը կ'ըլլայ . . | 1 $\frac{1}{8}$ | կամ | $\frac{9}{8}$ | ,, | $\frac{27}{24}$ |
| մի — | 525 | ,, ,, ,, . . | 1 $\frac{1}{4}$ | ,, | $\frac{5}{4}$ | ,, | $\frac{30}{24}$ |
| ֆա — | 560 | ,, ,, ,, . . | 1 $\frac{1}{3}$ | ,, | $\frac{4}{3}$ | ,, | $\frac{32}{24}$ |
| սօլ — | 630 | ,, ,, ,, . . | 1 $\frac{1}{2}$ | ,, | $\frac{3}{2}$ | ,, | $\frac{36}{24}$ |
| լա — | 700 | ,, ,, ,, . . | 1 $\frac{2}{3}$ | ,, | $\frac{5}{3}$ | ,, | $\frac{40}{24}$ |
| սի — | 787 ½ | ,, ,, ,, . . | 1 $\frac{7}{8}$ | ,, | $\frac{15}{8}$ | ,, | $\frac{45}{24}$ |
| տօ — | 840 | ,, ,, ,, . . | 2 | ,, | 2 | ,, | $\frac{48}{24}$ |

Աս վերի կտորակները կը ցուցունեն թէ քանի որ տօն 8 ճօճում կ'ընէ, րէն կ'ընէ, 9, և մին 10, ևն:

98. Հիմա առնենք 78րդ և 79րդ հատուածներուն մէջ գրուած ներդաշնակ ձայները. և պիտի տեսնենք թէ ինչու համար հոն ցուցուած ներդաշնակ շարակարգութիւնները հաճելի պիտի ըլլան լսողութեան:

Առաջին ներդաշնակ շարակարգութիւն.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1րդ. | տօ, | 1 | կամ | $\frac{24}{24}$ |
| 3րդ. | մի, | $\frac{5}{4}$ | ,, | $\frac{30}{24}$ |
| 5րդ. | սօլ, | $\frac{3}{2}$ | ,, | $\frac{36}{24}$ |
| 8րդ. | տօ, | 2 | ,, | $\frac{48}{24}$ |

Նու եթէ աս չորսը մէկ տեղ լսուին, պիտի տեսնուի որ երբ 1րդը կը ճօճէ 4 անգամ, 3րդը կը ճօճէ 5 անգամ, և 5րդը 6, 8րդը 8 անգամ. և մէկ մանրերորդի մէջ 105 անգամ չորս ճօճումները մէկ պիտի գան:

99. Երկրորդ ներդաշնակ շարակարգութիւն.

| | | | | |
|---|---|---|---|---|
| րէյ | 472 ½ | $\frac{9}{8}$ | կամ | $\frac{27}{24}$ |
| ֆա | 560 | $\frac{4}{3}$ | ,, | $\frac{32}{24}$ |
| սօլ | 630 | $\frac{3}{2}$ | ,, | $\frac{36}{24}$ |
| սի | 787 ½ | $\frac{15}{8}$ | ,, | $\frac{45}{24}$ |

Աս ձայներուն իրեքը կատարեալ համաձայնութիւն ունին. քանի որ րէն 3 ճօճում կ'ընէ, սօլը կ'ընէ 4, և սին 5. և մէկ մանրերկրորդի մէջ 157 ½ անգամ ճօճումներնին նոյն կու գայ: Բայց ֆան անանկ կից վերաբերութիւն չունի միւսներուն: Միայն 17 ½ ճօճում րէյին և սիին հետ կը պատահի: Նու 32 ճօճում կ'ընէ՝ երբ րէյը կ'ընէ 27, և սին 45: Բայց ֆան աւելի կից վերաբերութիւն մը ունի սօլին. 70 ճօճում անոր հետ նոյն կու գայ. մէկը կ'ընէ 8, երբ միւսը կ'ընէ 9: Վասն որոյ աս շարակարգութեան իրեքը կատարելապէս ներդաշնակ են, բայց չորրորդը միւսներուն չափ չէ. և արդարև կը տեսնուի որ բոլորը առաջին շարակարգութենէն ստորին է:

100. Երրորդ ներդաշնակ շարակարգութիւն.

| | | | | |
|---|---|---|---|---|
| րէյ | 472 ½ | $\frac{9}{8}$ | կամ | $\frac{27}{24}$ |
| ֆա | 560 | $\frac{4}{3}$ | ,, | $\frac{32}{24}$ |
| լա | 700 | $\frac{5}{3}$ | ,, | $\frac{40}{24}$ |
| րէյ | 945 | 2 $\frac{1}{4}$ | ,, | $\frac{54}{24}$ |

Րէյին և ֆային մէկզմէկու ունեցած վերաբերութիւնք

տրգէն ցուցուեցաւ ։ Ֆային ու լային անանկ է, որ 140 ճօճումին նոյն կու գայ. ֆան 4 ընելով, երբ լան կ'ընէ 5 ։ Լան 27 ճօճում ունի րէյին հետ նոյն. և կ'ընէ 20, երբ րէյը կ'ընէ 27 ։ Ասոն որոյ ասիկայ երկրորդին չափ աղէկ շարակարգութիւն մըն է, բայց ոչ թէ առաջինին հաւասար ։

101 . Այս 98րդ, 99րդ, 100րդ հատուածները կը ցուցունեն որ սքալան ընդունակ է անանկ շարակարգութիւններու, որ Հօրիզ—ոնտալէս հաճոյ պիտի գայ լսողութեան. և ոչ թէ լոկ կրթութեննէն կամ սովորութեննէն հաճելի կու գայ ։ Ուրիշ բան մըն ալ կայ ամբողջ սքալային վրայօք դիտելու ։ Եթէ անոր ամէն ձայնը մէկտեղ հնչուի, 17 ½ ճօճումը ամենուն մէկէն պիտի պատահի. և ամէն մէկը հոս վարը գրուած թիւովը ճօճումը պիտի ընէ այն նոյն ատենը՝ որ միւսներն ալ իրենց թիւերուն համեմատ կ'ընեն ։ Այսինքն

| տօ | րէյ | մի | ֆա | սօլ | լա | սի | տօ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 24 | 27 | 30 | 32 | 36 | 40 | 45 | 48 |

102 . Մինոր սքալան հետևեալ ճօճումները կ'ընէ վերէն վար իջնելու ատեն ։

| տօ | րէյ | մի | ֆա | սօլ | լա | սի | տօ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 420 | 472½ | 504 | 560 | 630 | 672 | 756 | 840 |

10.3 . Այս սքալային համաձայնութիւնները հետևեալ ներդաշնակութիւնները ունին ։

| | | |
|---|---|---|
| տօ | 5 | 84 ճօճում ընդհանուր |
| մի | 6 | |
| սօլ | 8 | է ամենուն ։ |
| տօ | 10 | |

| | | |
|---|---|---|
| ֆա | 5 | 112 ճօճում ընդհանուր |
| լա | 6 | |
| լա | 32 | 21 ճօճում ընդհանուր |
| րէյ | 45 | |

## Գ. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՍՔԱԼԱ

104 . Արևելեան երաժշտութեան տեղեակ եղողները՝ իրենց բնական սքալա ըսածը 68 հաւասար աստիճաններու կը բաժնեն. որոնք սքալային ութը ձայներուն կը բաժնեն հետևեալ կերպով ։

| տօ | րէյ | մի | ֆա | սօլ | լա | սի | տօ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 0 | 9 | 7 | 12 | 12 | 9 | 7 | 12 |

Որով կը տեսնուի ութնեակին ձայներուն մէկզմէկէ ունեցած հեռաւորութեանը համեմատութիւնը. այսինքն՝ թէ րէյը տօյէն 9 աստիճան վեր է, մին րէյէն 7, ֆան միէն 12, սօլը ֆաէն 12, ևն ։

105 . Այս սքալային սահմանին մէջ պարունակուած ձայներ միջոցը Եւրոպական սքալային հետ նոյն է ։ Ասոն որոյ 540 ճօճում գնելով ցած տօին, (որ վերջը կատարեալ չըլլալու

համար յարմար թիւ մըն է ,) բարձր տօն պիտի ըլլայ 1020 . և միւս ձայները իրենց ճօճումներովը հետևեալ կերպով պիտի շարուին ։

| տօ | րէյ | մի | ֆա | սօլ | լա | սի | տօ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 510 | 577 ½ | 630 | 720 | 810 | 877 ½ | 930 | 1020 |

տօն ունի 7 ½ ճօճ". րէյին հետ նոյն . և կ'ընէ 68 , երբ րէյը 77
րէն „ 30 „ միին „ „ „ 17 „ մին 21
մին „ 30 „ ֆաին „ „ „ 17 „ ֆան 26
ֆան „ 30 „ սօլին „ „ „ 17 „ սօլը 27
սօլը „ 7 ½ „ լաին „ „ „ 68 „ լան 117
լան „ 30 „ սիին „ „ „ 17 „ սին 31
սին „ 510 „ տօին „ „ „ 1 „ տօն 2

Յայտնի է որ բոլոր ասոնց մէջ՝ աքալային առաջին ձայնին վերջինէն զատ ձայն մը չգտնուիր որ կատարեալ համաձայնութիւն ունենայ ։ Արդ՝ եթէ դառնանք 98րդ հատուածին , կը տեսնենք որ առաջին շարակարգութեան բոլոր 4 ձայները տօին ճօճումներուն ¼ին հետ նոյն ճօճումը ունին ։ Կամ թէ ներկայ օրինակը առնելով , Եւրոպական տօն և մին 127 ½ , ու տօն և սօլը 255 ճօճում ունին մէկզմէկու հետ նոյն . քանի որ Արևելեան աքալային մէջ գտնուած ամենէն մօտ ձայները 30 էն՝ կամ տօին ճօճումներուն 1/17 էն աւելի նոյն ճօճում չունին ։

106 . Դիւրին է սա արևելեան աքալային ամէն մէկ ձայնը միւսներուն հետ բաղդատել . և պիտի տեսնուի որ անկարելի է անոնցմէ ներդաշնակ շարակարգութիւններ շինել ։ Բայց և այնպէս ասիկայ բնական աքալա կ'ըսուի , որպէս զի ուրիշներէն որոշուի՝ որոնք աւելի արհեստական շարք ունին , որոնց մէջ կան ձայներ 3 , 5 , 11 , 13 և մինչև անգամ 18 աստիճան ։

107 . Նախընթաց հատուածներուն մէջ բացատրուած սկզբունքները կը ցուցունեն թէ ինչու համար է որ ձայներու ներդաշնակ շարակարգութիւններ չեն շիներ , և չկրնար շինուիլ զուտ Արևելեան երաժշտութեան մէջ ։ Աքալան ընդունակ չէ ներդաշնակութիւն յառաջ բերելու . և անոր համար ան միակ ներդաշնակութիւնը որ կրնան ճարել՝ երգին հետ տօ ձայնին շարունակ ճնշմունքն է . ոչ թէ իբրև բոլոր միւսներուն հետ համաձայնող ձայն մը , այլ որպէս թէ սկզբնաւորութեան կէտը յիշեցունող ձայն մը՝ որուն շատ անգամ պիտի դառնայ երգողը ։ Բայց շատ անգամ միայն թմբուկը կը բաւականանայ , ժամանակը ցուցունելով ։ Արևելեան աքալան յայտնի է որ բնական կամ բանաւոր սկզբունքներու վրայ հիմնուած չէ , այլ ծագած է սովորութենէ . և անոր համար է վարժուողներուն հաճելի գալը ։ Այս աքալային շարակարգութիւնը դիպուածական ու անկանոն է . բայց տարակոյս չկայ որ արևելեան շատ երգերու մէջ գտնուած իրական գեղեցկութիւնները՝ ծագած ըլլալու են մեր բնութեան սկզբունքներէն և անիկայ կառավարող օրէնքներէն , և անտարակոյս կրնան պահուիլ՝ թէ որ ազատ մնան ան խառնափնդոր յաւելուածներէն , որ լոկ սովորութիւնը դիզած է վրանին ։

---

# 1 ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԱԾ. Սաղմոս 51: (10)

Ծանր.

Աս—տուած ո—ղոր—մած՝ ին — ծի ո — ղոր — մէ՛, Ան—հուն գը—թու—թեամբդ իմ մեղ—քըս քա — ւէ.

Ա — մէն յան — ցան—քէս լու — ա՛ իս մաք — րէ՛, Ի — մին մեղ—քե — րէս ով Տէր իս սըր — բէ՛ :

## 2 ՏԷՐՆ Է ԽԻՍՏ ՇԱՏ ՄԵԾ․ Սաղմոս 48։ (10)

Տէրն է խիստ շատ մեծ՝ ինքն է միշտ օրհ-նած, Եւ մեր Աս-տու-ծոյ քաղ-քին մէջ նըս-տած․ Ցըն-

ծում աշ-խար-հիս է լեռն Սի-օ — նին, Ըն — կէ կու-տայ Տէր շը-նորհք՝ խընդ-րո-ղին։

## 3 ԲԱՐԻ ԽՕՍՔԵՐՈՎ. Սաղմոս 45: (10)

Բա – րի խօս-քե-րով իմ սիր–տըս կ'ե – փի , Պի–տի արդ գո – վէ զա – նուն ար–քա–յի . Լե–

զուս շուտ գը–րող գրը – չի է նը – ման , Եւ միշտ քա – րո – զող սուրբ ճըշ–մար–տու – թեան :

Բ

Ո՛վ զար–մա–նա – լի սէր Աստուածայ – ին, Որ ինք մեր աշ–խարհն խըր–կեց իր Որ – դին.

Ե – կաւ մեզ փր – կեց մա – հէն՝ դը–ժող–քէն, Ու մեզ մօ–տե–ցուց մեր Ըս – տեղ – ծո – ղին:

# 5 ԵՐԲ ՔԵԶ ՀԱՆԴԻՊԻ. Սաղմոս 20: (10)

Դող.

Բ

Ե

Երբ քեզ հանդի-պի օ—րեր նե-ղու-թեան, Քեզ պա-տասխա-նէ հը-զօր Ե-հո—վան.

Բ

Ա-նուն Աստուծոյ Թող քեզ պաշտպա-նէ, Եւ իր Սուրբ Հո-գին քեզ միշտ ըս-փո—փէ:

## 6 ԻՆՁ ՏԷՐԸ ԵՂԱՒ· Սաղմոս 23։ (10)

Ինձ Տէ-րը ե-ղաւ Հո-վիւ կա-ռա-վար, Նա մէկ բա-նի ես կա-րօտ չեմ ըլ-լար. Օ-րեր անվախ-

ճան դաշ-տերն խոտա-ւէտ, Պի-տի ճարա-կիմ Պի-տի ճարա-կիմ Պի-տի ճա-րա-կիմ ընտ-րեալ հօ-տին հետ։

## 7 ԸԶՏԷՐ ԳՈՎԵՑԷՔ . Սաղմոս 117 : (10)

Ըզ – Տէր գովե – ցէք ազ – գեր աշխար – հի, Ով նա յոչըն – չէ ըզ – մեզ ստեղ–ծեց .

Ըզ– Տէր օրհնե – ցէք ժո–ղով–ուրդ երկ–րի . Փառ–քը զթու–թեամբ մար – դի – կը փր – կեց :

# 9 ՏԷՐՈՋՆ ՏՈՒԷՔ · Սաղմոս 29 : (10)

ձայնք

Տէ — րո – ջը տու – էք ով ազգք մարդ-կա-յին , Տէ – րո – ջը տու – էք փառք և զօ– րու–թիւն .

Տէ – րո – ջը տու – էք փառքն իր ա–նու–նին , Ը — րէք Աս–տու – ծոյ եր – կիր–պա–գու – թիւն :

Ծանր.

Ո՛վ փա–ռա–ւոր–եալ Ար – քայ երկ–նա – ւոր, Երկ – նի ու երկ– րի Տէր և Դա–տա – ւոր.

Տը– կար մար–դիկ–ներ կա– րող չէն եր – գել, Քու իշ – խա– նու – թիւնդ մեծ և ա – հա – ւոր:

## 11 ԻՆՉՈՒ ԴՈՒՔ ԸՍԷՔ. Երգ 35։ ( 10 )

Ջերմ

Ի՞ն — չու դուք ը — սէք՝ թէ դեռ կանուխ է Երկ — նից ու մահ-ուան վրա — յօ — քը խոր-հիլ.

Ծա — ղիկ մը շու — տով թոռ — միլ հը-նար է, Ին — ծի ալ այս — օր հը — նար է մեռ — նիլ։

Ո՛վ դուք ար–դար—ներ 'ի Տէր խըն–դա – ցէ՛ք , Ա — նոր ա — նու — նին պա — տիւ փառք տու–

էք · Զի ու–ղիղ–նե — րուն օրհ–նել կը վայ – լէ · Սաղ–մոս եր–գե — լով ըզ– Տէրն գո – վե – ցէ՛ք :

## 13 ԻՆՉՈՒ ԸՆՀԵՐԵՑՔ. Սաղմոս 2: (10)

Ին — չու ան — հա — ւատք վէ — ճեր կը հա — նեն, Ու փուճ բա-նե — րու միշտ խելք աւ-ներ են. Ին—

չու թա—գա — ւորք ի — րենց հաւ-նող են, Եւ միշտ կամ-քեր — նին ը — նել կը փըն-տա—ռեն:

արագ.

Հո-գիս, ար-թըն-ցի՛ր, ա — րև-ը դուն տես, Ժամ-բուղ մէջ մը-տիր, վա — ղէ ա-նոր պէս. Ա — մէն ծու-լու-թիւնդ քեզ-մէ թօ-թա-փէ՛, Եւ ան-հո-գու-թիւնդ մէկ-դի ար-ձա-կէ՛ :

## 15 ՈՎ ՏԷՐ ԻՀՈՎԱ․ Սաղմոս 28։ (10)

Ով Տէր Ի-հո-վա քե-զի կը կան-չեմ, Ին-ծի մի՛ լը-ռեր ով դուն Հոգ-ւոյս

վէմ, Թէ որ չը-լը-սես իմ ա-ղա-չանք-քիս, Յու-սով ա-մէն յոյս կը կոր-սըն-ցը-նեմ։

Ձիգ.

Ո՛վ Տէր իմ Աստ - ուած՝ քե - զի յու-սա - ցայ, Որ ես յա-ւի - տեա՛ն ըը - նաւ չա-մըչ-նամ. Քու ար-դա-րու - թեանդ ես միշտ ցան - կա - ցայ, Որ իմ փըր-կու - թիւնս շու - տով ես գըտ-նամ:

# 17 Ի՛ՆՉՈՒ ԵՍ ԱՍԱ՛ՆԿ. Եղ. 40։ (10)

Լաւ մեղմ.

Ի՞ն-չու ես ա-սանկ մեղ-քե-րըս սի-րեմ, Ու տը-ղա-յա-կան հա-ճոյք փըն-տը-ռեմ.

Երկ-նից՝ դը-ժոխ-քի վը-րայ չի-խոր-հիմ, Մոռ-նամ իմ հո-գիս՝ ա-ղօթ-քըս ձը-գեմ։

